Պրոլետարներ բոլոր երկրների, միացե[ք]

ՀԿ(բ)Կ ԿԵՆՏՐՈՆԻ ԿՈՄԻՏԵԻ ԿՈՒՍ·ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ,
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԵՎ ՄԱՄՈՒԼԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 6 (37)

ՀԿ(բ)Կ ԿԿ հրատարակչություն—«Խորհրդ. Հայաստան»

ԵՐԵՎԱՆ—1938

ՀԿ (բ) Կ Կենտկոմի կուս. պրոպագանդայի, ագիտացիայի յեվ մամուլի բաժին

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

№ 6 (37)

ՀԿ (բ) ԿԿԿ հրատարակչություն—«Խ. Հայաստան»

ՅԵՐԵՎԱՆ—1938

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Պատ. խմբագիր՝ Բ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ
Քարտուղար՝ ՀՐ. ՄԱՐԳԱՐՅԱՆ
Սրբագրիչ՝ Հ. ՋՐԱՂԱՑՊԱՆՅԱՆ
Գլավլիտի լիազոր՝ ՑՆ.—3904
Ստորագրված է տպագր. 17 մարտի 1938 թ.
Պատվեր № 234: Տիրաժ 15.000
«Խորհ. Հայաստան»-ի հրատ. տպարան,
Երևան

# ԿԱՆՈՆԱԴՐՈՒԹՅՈՒՆ ՀԱՅԿԱԿԱՆ ԽՍՀ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ

## Գ Լ Ո Ւ Խ 1

## ԸՆՏՐԱԿԱՆ ՍԻՍՏԵՄԸ

ՀՈԴՎԱԾ 1. Հայկական ԽՍՀ Սահմանադրության 109-րդ հոդվածի հիման վրա Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի պատգամավորների ընտրությունները ընտրողների կողմից կատարվում են ընդհանուր, հավասար և ուղղակի ընտրական իրավունքի հիման վրա՝ գաղտնի քվեարկությամբ:

ՀՈԴՎԱԾ 2. Հայկական ԽՍՀ Սահմանադրության 110-րդ հոդվածի հիման վրա պատգամավորների ընտրություններն ընդհանուր են,—Հայկական ԽՍՀ բոլոր քաղաքացիները, վորոնք հասել են 18 տարվան, անկախ ռասսայական ու ազգային պատկա-

նեյթյունից, դավանանքից, կրթական ցենզից, նստակեցությունից, սոցիալական ծագումից, գույքային դրությունից և անցյալ գործունեությունից իրավունք ունեն մասնակցելու պատգամավորների ընտրություններին և ընտրվելու Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի մեջ, բացառությամբ խելագարների և այն անձերի, վորոնք դատարանի կողմից դատապարտված են ընտրական իրավունքների զրկումով:

ՀՈԴՎԱԾ 3. Հայկական ԽՍՀ Սահմանադրության 111-րդ հոդվածի հիման վրա պատգամավորների ընտրությունները հավասար են, — յուրաքանչյուր քաղաքացի ունի մեկ ձայն. բոլոր քաղաքացիներն ընտրություններին մասնակցում են հավասար հիմունքներով:

ՀՈԴՎԱԾ 4. Հայկական ԽՍՀ Սահմանադրության 112-րդ հոդվածի հիման վրա կանայք ընտրելու և ընտրվելու իրավունքից ոգտվում են տղամարդկանց հետ համահավասար:

ՀՈԴՎԱԾ 5. Հայկական ԽՍՀ Սահմանադրության 113-րդ հոդվածի հիման վրա Կարմիր Բանակի շարքերում գտնվող քաղաքացիներն ընտրելու և ընտրվելու իրավուն-



քից ոգտվում են բոլոր քաղաքացիների հետ համահավասար:

ՀՈԴՎԱԾ 6. Հայկական ԽՍՀ Սահմանադրության 117-րդ հոդվածի հիման վրա ընտրությունների ժամանակ թեկնածուներն առաջադրվում են ըստ ընտրական ոկրուգների:

## ԳԼՈՒԽ II
## ԸՆՏՐՈՂՆԵՐԻ ՑՈՒՑԱԿՆԵՐԸ

ՀՈԴՎԱԾ 7. Ընտրողների ցուցակները կազմվում են քաղաքներում՝ աշխատավորների պատգամավորների քաղաքային Խորհրդի կողմից, իսկ ռայոնական բաժանում ունեցող քաղաքներում՝ ռայոնական Խորհրդի կողմից, գյուղական վայրերում՝ աշխատավորների պատգամավորների գյուղական Խորհրդի կողմից:

ՀՈԴՎԱԾ 8. Ընտրողների ցուցակների մեջ մտցվում են ընտրությունների օրը 18 տարին լրացրած այն բոլոր քաղաքացիները, վորոնք ունեն ընտրական իրավունք և ցուցակները կազմելու մոմենտին բնակվում են (մշտապես կամ ժամանակավորապես) տվյալ Խորհրդի տերիտորիայում:

ՀՈԴՎԱԾ 9. Ընտրողների ցուցակների մեջ

չեն մտցվում այն անձերը, վորոնք դատական վճռով ընտրական իրավունքներից զրկված են՝ ընտրական իրավունքներից զրկելու վերաբերյալ դատավճռի մեջ սահմանված ամբողջ ժամանակամիջոցում, ինչպես նաև այն անձերը, վորոնք օրենքով սահմանված կարգով ճանաչված են խելագար:

ՀՈԴՎԱԾ 10. Ընտրողների ցուցակները կազմվում են ըստ յուրաքանչյուր ընտրական տեղամասի այբբենական կարգով մատնանշելով ընտրողի ազգանունը, անունը, հայրանունը, տարիքն ու բնակության վայրը, և ստորագրվում են աշխատավորների պատգամավորների Խորհրդի նախագահի ու քարտուղարի կողմից:

ՀՈԴՎԱԾ 11. Ընտրողներից վոչ վոք չի կարող մտցվել մեկից ավելի ընտրական ցուցակի մեջ:

ՀՈԴՎԱԾ 12. Այն ընտրողների ցուցակները, վորոնք գտնվում են զինվորական մասերում և զինվորական միավորումներում, կազմվում են հրամանատարության կողմից, հրամանատարի և զինվորական կոմիսարի ստորագրություններով: Մյուս բոլոր զինվորական ծառայողներն ընտրողների ցուցակների մեջ մտցվում են ըստ բնակության



վայրի՝ աշխատավորների պատգամավորների համապատասխան Խորհուրդների կողմից:

ՀՈԴՎԱԾ 13. Հիվանդանոցներին, ծննդատներին, սանատորիաներին և այլ բուժ. հիմնարկներին կից ստեղծվող ընտրական տեղամասերի ընտրողների ցուցակները կազմվում են, դրանց մեջ մտցնելով ինչպես հիվանդ քաղաքացիներին, այնպես և ընտրությունների օրը հերթապահության մեջ գտնվող բուժ. անձնակազմին: Ընտրություններին չեն կարող մասնակցել այն հիվանդները, վորոնք գտնվում են սկարլատինայի և դիֆտերիայի բաժանմունքներում:

ՀՈԴՎԱԾ 14. Ընտրություններից 30 որ առաջ աշխատավորների պատգամավորների Խորհուրդը կախում է ընտրողների ցուցակները՝ ընդհանուրի գիտության համար, կամ ընտրողների համար հնարավորություն է ապահովում այդ ցուցակներին ծանոթանալու Խորհրդի շենքում:

ՀՈԴՎԱԾ 15. Ընտրողների ցուցակների բնագիրը պահվում է համապատասխանորեն՝ աշխատավորների պատգամավորների Խորհրդում և զինվորական մասում կամ զինվորական միավորման մեջ:

ՀՈԴՎԱԾ 16. Այն դեպքում, յերբ ընտ-

րողն ընտրողների ցուցակի հրապարակման և ընտրությունների օրվա միջև ընկած ժամանակամիջոցում փոխում է իր բնակության վայրը, աշխատավորների պատգամավորների համապատասխան Խորհուրդը նրան տալիս է Կենտրոնական ընտրական հանձնաժողովի կողմից սահմանված ձևի «քվեարկության իրավունքի վկայական» և ընտրողների ցուցակի մեջ նշվում է—«մեկնեց»։ Նոր բնակավայրում—մշտական կամ ժամանակավոր—ընտրողը մտցվում է ընտրողների ցուցակի մեջ, ներկայացնելով անձնական վկայական, ինչպես նաև «քվեարկության իրավունքի վկայական»։

ՀՈԴՎԱԾ 17. Ընտրողների ցուցակի մեջ անճշտություն լինելու վերաբերյալ (ցուցակի մեջ չմտցնելը, ցուցակից հանելը, ազգանվան, անվան, հայրանվան աղավաղումը, ընտրական իրավունքներից զրկված անձերի սխալ կերպով ցուցակի մեջ մտցնելը) դիմումը տրվում է աշխատավորների պատգամավորների այն Խորհրդին, որը հրապարակել է ցուցակը։

ՀՈԴՎԱԾ 18. Աշխատավորների պատգամավորների Խորհրդի գործադիր կոմիտեն պարտավոր է յերեք օրվա ընթացքում քննության առնել ընտրողների ցուցակի մեջ անճշտություն լինելու վերաբերյալ տրված յուրաքանչյուր դիմում։

ՀՈԴՎԱԾ 19. Ընտրողների ցուցակի մեջ անճշտություն լինելու վերաբերյալ դիմումը քննարկելուց հետո աշխատավորների պատգամավորների Խորհրդի գործադիր կոմիտեն պարտավոր է կամ անհրաժեշտ ուղղումներ մտցնել ընտրողների ցուցակի մեջ, կամ դիմում տվողին գրավոր տեղեկանք տալ նրա դիմումը մերժելու նկատառումների մասին. աշխատավորների պատգամավորների Խորհրդի վորոշման հետ համաձայն չլինելու դեպքում դիմում տվողը կարող է բողոք ներկայացնել ժողովրդական դատարանին։

ՀՈԴՎԱԾ 20. Ժողովրդական դատարանը պարտավոր է յերեք օրվա ընթացքում դատական դռնբաց նիստում, դիմում տվողի և Խորհրդի ներկայացուցչի ներկայությամբ, քննության առնել ցուցակի մեջ անճշտություն լինելու վերաբերյալ բողոքը և իր վճիռն անհապաղ հայտնել ինչպես՝ դիմում տվողին, այնպես և Խորհրդին։ Ժողովրդական դատարանի վճիռը վերջնական է։

## ԳԼՈՒԽ III

# ՀԱՅԿԱԿԱՆ ԽՍՀ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԸՆՏՐԱԿԱՆ ՕԿՐՈՒԳՆԵՐԸ

ՀՈԴՎԱԾ 21. Հայկական ԽՍՀ Սահմանադրության 21-րդ հոդվածի հիման վրա Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհուրդն ընտրվում է Հայկական ԽՍՀ քաղաքացիների կողմից ըստ ընտրական օկրուգների:

ՀՈԴՎԱԾ 22. Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի ընտրությունների ընտրական օկրուգը կազմվում է հետևյալ սկզբունքով — 5000 բնակիչ՝ յուրաքանչյուր օկրուգին: Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի ընտրությունների յուրաքանչյուր ընտրական օկրուգ ուղարկում է մեկ պատգամավոր:

ՀՈԴՎԱԾ 23. Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի ընտրությունների ընտրական օկրուգները կազմվում են Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի Նախագահության կողմից:

ՀՈԴՎԱԾ 24. Հայկական ԽՍՀ Գերագույն



Խորհրդի ընտրությունների ընտրական օկրուգների ցանկը հրապարակվում է Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի Նախագահության կողմից ընտրությունների օրը նշանակելու հետ միաժամանակ:

## ԳԼՈՒԽ IV

# ԸՆՏՐԱԿԱՆ ՏԵՂԱՄԱՍԵՐԸ

ՀՈԴՎԱԾ 25. Ընտրական բյուլետեններն ընդունելու և ձայները հաշվելու համար, Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի ընտրությունների ընտրական օկրուգների մեջ մտնող քաղաքների ու շրջանների տերիտորիան բաժանվում է ընտրական տեղամասերի:

ՀՈԴՎԱԾ 26. Ընտրական տեղամասերը կազմվում են քաղաքներում՝ աշխատավորների պատգամավորների քաղաքային Խորհուրդների կողմից, ռայոնական բաժանում ունեցող քաղաքներում՝ աշխատավորների պատգամավորների ռայոնական Խորհուրդների կողմից, գյուղական վայրերում՝ աշխատավորների պատգամավորների շրջանային Խորհուրդների կողմից:

ՀՈԴՎԱԾ 27. Ընտրական տեղամասերը

կազմվում են ոչ ուշ քան ընտրություններից 45 օր առաջ:

ՀՈԴՎԱԾ 28. Երկու հազարից ոչ ավելի բնակիչ ունեցող գյուղխորհրդի տերիտորիան կազմում է, իբրև կանոն, մեկ ընտրական տեղամաս, յուրաքանչյուր գյուղում, որն ունի 500-ից մինչև ոչ ավելի քան 2000 բնակիչ, կազմակերպվում է առանձին ընտրական տեղամաս:

Այն գյուղերում կամ այն մի խումբ գյուղերում, որոնց բնակչությունը 500-ից պակաս է, բայց ոչ պակաս, քան 300 հոգի, երբ այդպիսի գյուղերի հեռավորությունն ընտրական տեղամասի կենտրոնից ավելի է 10 կիլոմետրից, կարող են կազմվել առանձին ընտրական տեղամասեր:

ՀՈԴՎԱԾ 29. Հայկական ԽՍՀ այն շրջաններում, որտեղ գերակշռում են մանր բնակավայրերը, թույլատրվում է կազմակերպել ընտրական տեղամասեր առնվազն 100 հոգի բնակչությամբ:

ՀՈԴՎԱԾ 30. Այն քաղաքները, բանվորական ավանները, ինչպես նաև գյուղերն ու գյուղխորհրդի տերիտորիան, որոնք ունեն 2000 բնակչից ավելի, ընտրական տեղամասերի բաժանվում են հետևյալ հաշվով՝ մեկ



ընտրական տեղամաս 1500—2500 բնակչին:

ՀՈԴՎԱԾ 31. Զինվորական մասերը և զինվորական միավորումները կազմում են առանձին ընտրական տեղամասեր, ոչ պակաս քան 50 և ոչ ավելի, քան 1500 ընտրողներով, որոնք մտնում են ընտրական օկրուգի մեջ, ըստ այն վայրի, որտեղ գտնվում է զորամասը կամ զինվորական միավորումը:

ՀՈԴՎԱԾ 32. Այն հիվանդանոցներին, ծննդատներին, սանատորիաներին, հաշմանդամների տներին կից, որոնք ունեն առնվազն 50 ընտրող, ստեղծվում են առանձին ընտրական տեղամասեր:

Մի քանի կորպուս ունեցող հիվանդանոցներում թույլատրվում է առանձին կորպուսներին կից ստեղծել ընտրական տեղամասեր, կորպուսներից յուրաքանչյուրում առնվազն 50 ընտրող լինելու դեպքում:

Այն հիվանդանոցներում և այլ բուժ. հիմնարկներում, որտեղ առանձին ընտրական տեղամասեր չեն կազմակերպվում, թույլատրվում է ընտրական բյուլետեններն ընդունել հենց հիվանդանոցներում և բուժ. հիմնարկներում՝ ընտրական հանձնաժողովների առանձնացրած անդամների կողմից:

Այդ դեպքում հիվանդանոցներն ունենում են առանձին քվեատուփեր։

## ԳԼՈՒԽ V

# ԸՆՏՐԱԿԱՆ ՀԱՆՁՆԱԺՈՂՈՎՆԵՐ

ՀՈԴՎԱԾ 33· Հայկական ՍՍՀ Գերագույն Սովետի ընտրությունների Կենտրոնական ընտրական հանձնաժողովը կազմվում է աշխատավորների հասարակական կազմակերպությունների ու ընկերությունների ներկայացուցիչներից և հաստատվում է Հայկական ՍՍՀ Գերագույն Սովետի Նախագահության կողմից՝ ընտրությունների օրը հրապարակվելու հետ միաժամանակ։

ՀՈԴՎԱԾ 34· Կենտրոնական ընտրական հանձնաժողովը կազմվում է նախագահից, նախագահի տեղակալից, քարտուղարից և 12 անդամից։

ՀՈԴՎԱԾ 35· Կենտրոնական ընտրական հանձնաժողովը՝

ա) Հայկական ՍՍՀ ամբողջ տերիտորիա-



յում հսկում է ընտրությունների ընթացքում «Հայկական ՍՍՀ Գերագույն Սովետի ընտրությունների կանոնադրության» անշեղ կատարմանը·

բ) քննության է առնում ընտրական հանձնաժողովների սխալ գործողությունների վերաբերյալ բողոքները և բողոքների առթիվ կայացնում է վերջնական վճիռներ,

գ) սահմանում է կնիքների, քվեատուփերի նմուշները, «քվեարկության իրավունքի վկայականի» ձևը, ընտրական բյուլլետենների և նրանց ծրարների ձևն ու գույնը· ընտրողների ցուցակի ձևը, ձայները հաշվելու արձանագրության ձևը, ընտրվելու վերաբերյալ վկայականի ձևը·

դ) ցուցակագրում է Հայկական ՍՍՀ Գերագույն Սովետի մեջ ընտրված պատգամավորներին·

ե) Հայկական ՍՍՀ Գերագույն Սովետի մանդատային հանձնաժողովին է հանձնում ընտրությունների վերաբերյալ գործավարությունը։

ՀՈԴՎԱԾ 36· Հայկական ՍՍՀ Գերագույն Սովետի ընտրությունների յուրաքանչյուր ընտրական օկրուգում ստեղծվում է Հայկական ՍՍՀ Գերագույն Սովետի

ընտրությունների Օկրուգային ընտրական հանձնաժողով:

ՀՈԴՎԱԾ 37. Հայկական ՍՍՀ Գերագույն Սովետի ընտրությունների Օկրուգային ընտրական հանձնաժողովները կազմվում են աշխատավորների հասարակական կազմակերպությունների և ընկերությունների ներկայացուցիչներից և հաստատվում են Հայկական ՍՍՀ Գերագույն Սովետի Նախագահության կողմից, ոչ ուշ, քան ընտրություններից 55 օր առաջ:

ՀՈԴՎԱԾ 38. Հայկական ՍՍՀ Գերագույն Սովետի ընտրությունների Օկրուգային ընտրական հանձնաժողովը կազմվում է նախագահից, նախագահի տեղակալից, քարտուղարից և 8 անդամից:

ՀՈԴՎԱԾ 39. Հայկական ՍՍՀ Գերագույն Սովետի ընտրությունների Օկրուգային ընտրական հանձնաժողովը՝

ա) հսկում է, որպեսզի աշխատավորների պատգամավորների Սովետների համապատասխան գործադիր կոմիտեներն ընտրական տեղամասերը ժամանակին կազմակերպեն.

բ) սահմանում է ընտրական տեղամասերի հերթական համարները.



գ) հսկում է ընտրողների ցուցակները ժամանակին կազմելու և ընդհանուրի գիտությանը հասցնելու.

դ) ցուցակագրում է Հայկական ՍՍՀ Գերագույն Սովետի պատգամավորության թեկնածուներին՝ պահպանելով Հայկական ՍՍՀ Սահմանադրության և «Հայկական ՍՍՀ Գերագույն Սովետի ընտրությունների կանոնադրության» առաջադրած պահանջները.

ե) տեղամասային ընտրական հանձնաժողովներին մատակարարում է սահմանված ձևի ընտրական բյուլետեններ ու ծրարներ.

զ) հաշվում է ձայները և որոշում ընտրությունների արդյունքները՝ ըստ օկրուգի.

է) կենտրոնական ընտրական հանձնաժողովին է ներկայացնում ընտրությունների վերաբերյալ գործավարությունը.

ը) ընտրված պատգամավորին վկայական է տալիս ընտրվելու մասին:

ՀՈԴՎԱԾ 40. Տեղամասային ընտրական հանձնաժողովները կազմվում են աշխատավորների հասարակական կազմակերպու-

թյունների ու ընկերությունների ներկայացուցիչներից և հաստատվում են քաղաքներում՝ աշխատավորների պատգամավորների քաղաքային Խորհուրդների կողմից, իսկ ռայոնական բաժանում ունեցող քաղաքներում՝ աշխատավորների պատգամավորների ռայոնական Խորհուրդների կողմից, գյուղական վայրերում՝ աշխատավորների պատգամավորների շրջանային Խորհուրդների կողմից—ոչ ուշ, քան ընտրություններից 40 օր առաջ:

ՀՈԴՎԱԾ 41. Տեղամասային ընտրական հանձնաժողովը կազմվում է նախագահից, նախագահի տեղակալից, քարտուղարից և 2—6 անդամից:

ՀՈԴՎԱԾ 42. Տեղամասային ընտրական հանձնաժողովը՝

ա) ընտրական տեղամասում կատարում է ընտրական բյուլետենների ընդունումը.

բ) հաշվում է Հայկական ՍՍՀ Գերագույն Խորհրդի պատգամավորության յուրաքանչյուր թեկնածուին տրված ձայները.

գ) ընտրությունների վերաբերյալ գործավարությունը հանձնում է Օկրուգային ընտրական հանձնաժողովին:

ՀՈԴՎԱԾ 43. Կենտրոնական ընտրական



հանձնաժողովի, Օկրուգային և Տեղամասային ընտրական հանձնաժողովների նիստերն օրինական են համարվում, յեթե նրանց մասնակցում է հանձնաժողովի ընդհանուր կազմի կեսից ավելին:

ՀՈԴՎԱԾ 44. Ընտրական հանձնաժողովներում բոլոր հարցերը վճռվում են ձայների հասարակ մեծամասնությամբ. ձայները հավասար լինելու դեպքում—նախագահի ձայնը վերակշռություն է տալիս:

ՀՈԴՎԱԾ 45. Հայկական ՍՍՀ Գերագույն Խորհրդի ընտրությունների հետ կապված ծախսերը կատարվում են պետության հաշվին:

ՀՈԴՎԱԾ 46. Կենտրոնական ընտրական հանձնաժողովը, Օկրուգային և Տեղամասային ընտրական հանձնաժողովներն ունեն իրենց կնիքը՝ Կենտրոնական ընտրական հանձնաժողովի սահմանած ձևով:

# ԳԼՈՒԽ VI

# ՀԱՅԿԱԿԱՆ ԽՍՀ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ ՊԱՏԳԱՄԱՎՈՐՈՒԹՅԱՆ ԹԵԿՆԱԾՈՒՆԵՐ ԱՌԱՋԱԴՐԵԼՈՒ ԿԱՐԳԸ

ՀՈԴՎԱԾ 47. Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի թեկնածուներ առաջադրելու իրավունքը Հայկական ԽՍՀ Սահմանադրության 117-րդ հոդվածի հիման վրա ապահովվում է աշխատավորների հասարակական կազմակերպությունների և ընկերությունների—կոմունիստական կուսակցական կազմակերպությունների, արհեստակցական միությունների, կոոպերատիվների, երիտասարդության կազմակերպությունների, կուլտուրական ընկերությունների և այլ կազմակերպությունների համար, որոնք գրանցված են օրենքով սահմանված կարգով:

ՀՈԴՎԱԾ 48. Թեկնածուներ առաջադրելու իրավունքն իրականացնում են աշխատա-



վորների հասարակական կազմակերպությունների և ընկերությունների ինչպես հանրապետական օրգանները, այնպես և նրանց շրջանային օրգանները, նույնպես և բանվորների ու ծառայողների ընդհանուր ժողովները՝ ձեռնարկություններում, կարմիր բանակայինների ընդհանուր ժողովները — զորամասերում, ինչպես և գյուղացիների ընդհանուր ժողովները — կոլտնտեսություններում, խորհտնտեսությունների բանվորների ու ծառայողների ընդհանուր ժողովները — խորհտնտեսություններում:

ՀՈԴՎԱԾ 49. Պատգամավորության թեկնածուները չեն կարող լինել Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի ընտրությունների՝ Օկրուգային ընտրական հանձնաժողովների, ինչպես նաև այն օկրուգի Տեղամասային ընտրական հանձնաժողովների անդամներ, որտեղ նրանք առաջադրված են որպես պատգամավորության թեկնածու:

ՀՈԴՎԱԾ 50. Ոչ ուշ, քան ընտրություններից 30 օր առաջ Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի պատգամավորության թեկնածուներ առաջադրող՝ աշխատավորների բոլոր հասարակական կազմակերպությունները կամ ընկերությունները պարտավոր են պատգամավորության թեկնածուներին

ցուցակագրել Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի ընտրությունների համապատասխան Օկրուգային ընտրական հանձնաժողովում:

ՀՈԴՎԱԾ 51. Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի ընտրությունների Օկրուգային ընտրական հանձնաժողովները պարտավոր են ցուցակագրել Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի՝ պատգամավորության բոլոր թեկնածուներին, վորոնք առաջադրվել են աշխատավորների հասարակական կազմակերպությունների և ընկերությունների կողմից, պահպանելով Հայկական ԽՍՀ Սահմանադրության և «Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի ընտրությունների Կանոնադրության» պահանջները:

ՀՈԴՎԱԾ 52. Աշխատավորների այն հասարակական կազմակերպությունները կամ ընկերությունները, վորոնք Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի պատգամավորության թեկնածու յեն առաջադրում, պարտավոր են ներկայացնել Օկրուգային ընտրական հանձնաժողովին հետևյալ փաստաթղթերը.

ա) պատգամավորության թեկնածու առաջադրած ժողովի կամ նիստի արձանագրությունը, վորն ստորագրված է լինում



նախագահության անդամների կողմից և վորի մեջ նշված է լինում նրանց տարիքը, բնակատեղը, թեկնածու առաջադրած կազմակերպության անունը, մասնանշված է լինում պատգամավորության թեկնածու առաջադրած ժողովի կամ նիստի տեղը, ժամանակը և մասնակիցների թիվը, ընդվորում արձանագրության մեջ պետք է մասնանշված լինեն պատգամավորության թեկնածուի ազգանունը, հայրանունը, տարիքը, բնակատեղը, կուսակցականությունը, զբաղմունքը:

բ) պատգամավորության թեկնածուի հայտարարությունը, թե ինքը համաձայն է քվեարկվելու տվյալ ընտրական օկրուգում՝ իրեն առաջադրած կազմակերպության կողմից:

ՀՈԴՎԱԾ 53. Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի պատգամավորության թեկնածուն կարող է քվեարկվել միայն մեկ օկրուգում:

ՀՈԴՎԱԾ 54. Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի ընտրությունների Օկրուգային ընտրական հանձնաժողովի հրաժարումը պատգամավորության թեկնածուին ցուցակագրելուց՝ կարող է բողոքարկվել 2 օրվա ընթացքում Կենտրոնական ընտրական հանձնաժողովին, վորի վորոշումը վերջնական է:

ՀՈԴՎԱԾ 55. Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի յուրաքանչյուր ցուցակագրված պատգամավորության թեկնածուի ազգանունը, անունը, հայրանունը, տարիքը, զբաղմունքը, կուսակցականությունը և թեկնածուին առաջադրող հասարակական կազմակերպության անունը հրապարակում է Օկրուգային ընտրական հանձնաժողովը, ոչ ուշ, քան ընտրություններից 25 օր առաջ:

ՀՈԴՎԱԾ 56. Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի պատգամավորության բոլոր գրանցված թեկնածուները պարտադիր կարգով պետք է մտցվեն ընտրական բյուլետենի մեջ:

ՀՈԴՎԱԾ 57. Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի ընտրությունների Օկրուգային ընտրական հանձնաժողովները պարտավոր են ոչ ուշ, քան Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի ընտրություններից 15 օր առաջ տպագրել և բոլոր Տեղամասային ընտրական հանձնաժողովներին ուղարկել ընտրական բյուլետենները:

ՀՈԴՎԱԾ 58. Ընտրական բյուլետենները տպագրվում են համապատասխան ընտրական օկրուգի ազգաբնակչության լեզվով:

ՀՈԴՎԱԾ 59. Ընտրական բյուլետենները տպագրվում են Կենտրոնական ընտրական



հանձնաժողովի սահմանած ձևով և այնպիսի քանակությամբ, որ ապահովվի ընտրական բյուլետենների մատակարարումը բոլոր ընտրողներին:

ՀՈԴՎԱԾ 60. Յուրաքանչյուր կազմակերպության համար, որն առաջադրել է Օկրուգային ընտրական հանձնաժողովում ցուցակագրված թեկնածու, ինչպես և Հայկական ԽՍՀ յուրաքանչյուր քաղաքացու համար իրավունք է ապահովվում անարգել ագիտացիա մղելու այդ թեկնածուի օգտին ժողովներում, մամուլում և այլ եղանակներով, համաձայն Հայկական ԽՍՀ Սահմանադրության 100-րդ հոդվածի:

## Գ Լ Ո Ւ Խ VII
## ՔՎԵԱՐԿՈՒԹՅԱՆ ԿԱՐԳԸ

ՀՈԴՎԱԾ 61. Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի ընտրությունները կատարվում են մեկ օրվա ընթացքում, որն ընդհանուր է Հայկական ԽՍՀ համար:

ՀՈԴՎԱԾ 62. Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի ընտրությունների օրը սահմանում է Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի Նախագահությունը ոչ ուշ, քան ընտրու-

թյունների ժամկետից 2 ամիս առաջ: Ընտրությունները կատարվում են վոչ աշխատանքային որ:

ՀՈԴՎԱԾ 63․ Նախքան ընտրությունները, վերջին 20 որվա ընթացքում, Տեղամասային ընտրական հանձնաժողովը ամեն որ հրապարակում կամ վորևէ այլ միջոցով ընտրողներին լայնորեն հաղորդում է ընտրությունների որվա և ընտրությունների տեղի մասին:

ՀՈԴՎԱԾ 64․ Ընտրողներն իրենց ձայները տալիս են ընտրությունների որը, առավոտյան ժամի 6–ից մինչև գիշերվա ժամի 12–ը՝ տեղական ժամանակով:

ՀՈԴՎԱԾ 65․ Ընտրությունների որը, առավոտյան ժամի 6–ին, Տեղամասային ընտրական հանձնաժողովի նախագահը հանձնաժողովի անդամների ներկայությամբ ստուգում է քվետուփերը և ընտրողների՝ սահմանված ձևով կազմված ցուցակի առկայությունը, վորից հետո փակում ու կնքում է քվետուփերը հանձնաժողովի կնիքով և հրավիրում է ընտրողներին անցնել քվեարկության:

ՀՈԴՎԱԾ 66․ Յուրաքանչյուր ընտրող քվեարկում է անձամբ, այդ նպատակով ներկայանալով քվեարկության համար հատ–



կացված շենքը, ընդվորում ընտրողներն իրենց ձայները տալիս են ընտրական բյուլետենները փակ ծրարով քվետուփի մեջ գցելով:

ՀՈԴՎԱԾ 67․ Ընտրությունների շենքում բյուլետենները լրացնելու համար հատկացվում է առանձին սենյակ, վորտեղ քվեարկության ժամանակ արգելվում է, բացի քվեարկողներից, վորևէ մեկի, ներառյալ նաև Տեղամասային ընտրական հանձնաժողովի անդամների, ներկայությունը․ բյուլետենները լրացնելու համար մի քանի ընտրողներ միաժամանակ ներս թողնելիս սենյակը պետք է ունենա միջնորմներ կամ շիրմաներ՝ միաժամանակ ներս թողնվող ընտրողների թվի համեմատ:

ՀՈԴՎԱԾ 68․ Ընտրական շենքը յեկած ընտրողը Տեղամասային ընտրական հանձնաժողովի քարտուղարին կամ անդամին ներկայացնում է կամ անձնագիրը, կամ կոլտնտեսային գրքույկը, կամ արհմիութենական տոմսը, կամ վորևէ այլ անձնական վկայական, և ընտրողների ցուցակով ստուգվելուց ու ընտրողների ցուցակում նշվելուց հետո ստանում է սահմանված ձևի ընտրական բյուլետեն ու ծրար:

ՀՈԴՎԱԾ 69․ Այն անձերի համար, վո–

րոնք ընտրությունների շենքն են ներկայացել «քվեարկության իրավունքի վկայականով», համաձայն սույն՝ «Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի ընտրությունների Կանոնադրության» 16-րդ հոդվածի, Տեղամասային ընտրական հանձնաժողովը կազմում է հատուկ ցուցակ, որը կցվում է ընտրողների ցուցակին:

ՀՈԴՎԱԾ 70․ Ընտրական բյուլետենները լրացնելու համար հատկացված սենյակում ընտրողը յուրաքանչյուր ընտրական բյուլետենում թողնում է այն թեկնածուի ազգանունը, որի օգտին ձայն է տալիս ինքը, ջնջելով մյուսներինը․ բյուլետենը դնելով ծրարի մեջ ու փակցնելով ծրարը՝ ընտրողն անցնում է այն սենյակը, որտեղ գտնվում է Տեղամասային ընտրական հանձնաժողովը, և ընտրական բյուլետենը պարունակող ծրարը գցում է քվետուփի մեջ:

ՀՈԴՎԱԾ 71․ Այն ընտրողները, որոնք անգրագիտության կամ որևէ ֆիզիկական թերության պատճառով հնարավորություն չունեն ինքնուրույն կերպով լրացնելու ընտրական բյուլետենը, իրավունք ունեն ընտրական բյուլետենների լրացման սենյակը հրավիրել որևէ մի այլ ընտրողի՝ ընտրական բյուլետենը լրացնելու համար:



ՀՈԴՎԱԾ 72․ Ընտրական շենքում՝ ձայներ տալու ժամանակ՝ ընտրական ագիտացիա չի թույլատրվում:

ՀՈԴՎԱԾ 73․ Ընտրական շենքի կարգապահության համար պատասխանատվություն է կրում հանձնաժողովի նախագահը, և նրա կարգադրությունները բոլոր ներկա գտնվողների համար պարտադիր են:

ՀՈԴՎԱԾ 74․ Ընտրությունների օրվա գիշերը, ժամի 12ին, Տեղամասային ընտրական հանձնաժողովի նախագահը քվեարկությունն ավարտված է հայտարարում, և հանձնաժողովն սկսում է բանալ քվետուփը:

## ԳԼՈՒԽ VIII

## ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐԻ ՎՈՐՈՇՈՒՄԸ

ՀՈԴՎԱԾ 75․ Այն շենքում, որտեղ տեղամասային ընտրական հանձնաժողովը հաշվում է ձայները, ձայները հաշվելու ժամանակ ներկա գտնվելու իրավունք ունեն աշխատավորների հասարակական կազմակերպությունների և ընկերությունների՝ դրա համար հատկապես լիազորված ներկայացու-

ցիչները, ինչպես և մամուլի ներկայացուցիչները:

ՀՈԴՎԱԾ 76. Տեղամասային ընտրական հանձնաժողովը, բաց անելով քվետուփերը, դցած ծրարների թիվը համեմատում է քվեարկությանը մասնակցած անձերի թվի հետ և ստուգման արդյունքները մտցնում է արձանագրության մեջ:

ՀՈԴՎԱԾ 77. Տեղամասային ընտրական հանձնաժողովի նախագահը բաց է անում ծրարները և Տեղամասային ընտրական հանձնաժողովի բոլոր անդամների ներկայությամբ կարդում է քվեարկման արդյունքները ըստ յուրաքանչյուր բյուլլետենի:

ՀՈԴՎԱԾ 78. Պատգամավորության յուրաքանչյուր թեկնածուի համար կազմվում է հաշվային թերթիկ՝ 2 օրինակ—հանձնաժողովի քարտուղարի կողմից և Տեղամասային ընտրական հանձնաժողովի՝ դրա համար լիազորված անդամների կողմից:

ՀՈԴՎԱԾ 79. Վավերական չեն համարվում՝

ա) չսահմանված ձևի ու գույնի բյուլլետենները.

բ) առանց ծրարի կամ չսահմանված ձևի ծրարով տրված բյուլլետենները.

գ) այն բյուլլետենները, որոնք պարու-



նակում են ընտրվելիք պատգամավորների թվից ավելի թեկնածուներ:

ՀՈԴՎԱԾ 80. Ընտրական բյուլլետենի վավերական լինելու նկատմամբ տարակուսանք ծագելու դեպքում հարցը լուծում է Տեղամասային ընտրական հանձնաժողովը քվեարկության միջոցով, որը նշվում է արձանագրության մեջ:

ՀՈԴՎԱԾ 81. Տեղամասային ընտրական հանձնաժողովը կազմում է քվեարկության սահմանված ձևի արձանագրություն՝ երկու օրինակ, որոնք ստորագրում են Տեղամասային ընտրական հանձնաժողովի բոլոր անդամները, այդ թվում՝ պարտադիր կերպով նախագահն ու քարտուղարը:

ՀՈԴՎԱԾ 82. Տեղամասային ընտրական հանձնաժողովի քվեարկության արձանագրության մեջ պետք է մատնանշված լինի.

ա) քվեարկությունն սկսվելու և վերջանալու ժամանակը.

բ) ընտրողների ցուցակով ձայն տված ընտրողների թիվը.

գ) «քվեարկության իրավունքի վկայականներով» ձայն տված ընտրողների թիվը.

դ) տրված ծրարների թիվը.

ե) Տեղամասային ընտրական հանձնաժողովին տրված դիմումների ու բողոքների

հակիրճ բովանդակությունը և Տեղամասային ընտրական հանձնաժողովի ընդունած որոշումները.

գ) ձայները հաշվելու արդյունքներն ըստ յուրաքանչյուր թեկնածուի:

ՀՈԴՎԱԾ 83. Ձայների հաշվելը վերջանալուց և արձանագրությունը կազմելուց հետո հանձնաժողովի նախագահը հրապարակում է քվեարկության արդյունքները հանձնաժողովի բոլոր անդամների ներկայությամբ:

ՀՈԴՎԱԾ 84. Տեղամասային ընտրական հանձնաժողովի կազմած քվեարկության արձանագրության մի օրինակը, Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի պատգամավորության թեկնածուների հաշվային թերթիկների յերկու օրինակի հետ միասին 24 ժամվա ընթացքում, սուրհանդակի միջոցով, ուղարկվում է Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի ընտրությունների Ոկրուգային ընտրական հանձնաժողովին:

ՀՈԴՎԱԾ 85. Բոլոր ընտրական բյուլետենները (վավերականներն առանձին և ոչ վավերական ճանաչվածներն առանձին) պետք է կնքվեն Տեղամասային ընտրական հանձնաժողովի կնիքով և քվեարկության արձանագրության յերկրորդ օրինակի ու



կնիքի հետ միասին Տեղամասային ընտրական հանձնաժողովի նախագահի կողմից հանձնվեն պահելու՝ քաղաքներում—աշխատավորների պատգամավորների քաղաքային Խորհուրդներին, իսկ ռայոնական բաժանում ունեցող քաղաքներում—աշխատավորների պատգամավորների ռայոնական Խորհուրդներին, գյուղական վայրերում—աշխատավորների պատգամավորների շրջանային Խորհուրդներին:

ՀՈԴՎԱԾ 86. Աշխատավորների պատգամավորների Խորհուրդների վրա պարտականություն է դրվում պահելու ընտրական բյուլետենները, մինչև որ համապատասխան ոկրուգի պատգամավորների մանդատները հաստատվեն Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի կողմից:

ՀՈԴՎԱԾ 87. Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի ընտրությունների Ոկրուգային ընտրական հանձնաժողովը ձայները հաշվում է Տեղամասային ընտրական հանձնաժողովների ներկայացրած արձանագրությունների հիման վրա:

ՀՈԴՎԱԾ 88. Այն շենքում, որտեղ Ոկրուգային ընտրական հանձնաժողովը հաշվում է ձայները, ձայները հաշվելիս ներկա գտնվելու իրավունք ունեն աշխատավորնե-

րի հասարակական կազմակերպությունների և ընկերությունների՝ դրա համար հատկապես լիազորված ներկայացուցիչները, ինչպես և մամուլի ներկայացուցիչները:

ՀՈԴՎԱԾ 89. Ոկրուգային ընտրական հանձնաժողովը յուրաքանչյուր թեկնածուի համար՝ կազմում է 2 օրինակ հաշվային թերթիկ, որտեղ նշվում է յուրաքանչյուր պատգամավորության թեկնածուի ստացած ձայների թիվը:

ՀՈԴՎԱԾ 90. Ոկրուգային ընտրական հանձնաժողովը կազմում է քվեարկման արձանագրություն 2 օրինակից, որոնք ստորագրում են Ոկրուգային ընտրական հանձնաժողովի բոլոր անդամները, այդ թվում՝ պարտադիր կերպով նախագահն ու քարտուղարը:

ՀՈԴՎԱԾ 91. Ոկրուգային ընտրական հանձնաժողովի արձանագրության մեջ պետք է մատնանշված լինի՝

ա) ոկրուգի ընտրողների ընդհանուր թիվը.

բ) քվեարկությանը մասնակցած ընտրողների ընդհանուր թիվը.

գ) յուրաքանչյուր պատգամավորության թեկնածուին տրված ձայների թիվը.

դ) Ոկրուգային ընտրական հանձնաժողո-



վին տրված դիմումների ու բողոքների հակիրճ բովանդակությունը և Ոկրուգային ընտրական հանձնաժողովի ընդունած որոշումները:

ՀՈԴՎԱԾ 92. Ձայների հաշվելը վերջանալուց ամենաուշը 24 ժամ հետո Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի ընտրությունների Ոկրուգային ընտրական հանձնաժողովի նախագահը պարտավոր է արձանագրության առաջին օրինակը հաշվային թերթիկների հետ միասին, կնքված, սուրհանդակի միջոցով, ուղարկել Կենտրոնական ընտրական հանձնաժողովին:

ՀՈԴՎԱԾ 93. Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի պատգամավորության այն թեկնածուն, որն ստացել է ձայների բացարձակ մեծամասնություն, այսինքն՝ ոկրուգում տրված և վավերական ճանաչված բոլոր ձայների կեսից ավելին, ընտրված է համարվում:

ՀՈԴՎԱԾ 94. Արձանագրությունն ստորագրվելուց հետո Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի ընտրությունների Ոկրուգային ընտրական հանձնաժողովի նախագահը հրապարակում է ընտրությունների արդյունքները և ընտրվելու մասին վկայական է տալիս Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի

պատգամավորության ընտրված թեկնածուին:

ՀՈԴՎԱԾ 95. Եթե թեկնածուներից ոչ մեկը ձայների բացարձակ մեծամասնություն չի ստացել, համապատասխան Օկրուգային ընտրական հանձնաժողովն այդ նշում է արձանագրության մեջ առանձին և հաղորդում է Կենտրոնական ընտրական հանձնաժողովին և միաժամանակ հայտարարում է ձայների ամենամեծ թիվն ստացած երկու թեկնածուների վերաքվեարկում, ինչպես նաև նշանակում է վերաքվեարկման օրը ոչ ուշ, քան ընտրությունների առաջին շրջանը լրանալուց 2 շաբաթ հետո:

ՀՈԴՎԱԾ 96. Եթե օկրուգում տրված ձայների թիվը այդ օկրուգում քվեարկելու իրավունք ունեցող ընտրողների կեսից պակաս է լինում, Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի ընտրությունների Օկրուգային ընտրական հանձնաժողովն այդ նշում է առանձին արձանագրության մեջ և անհապաղ հաղորդում է Կենտրոնական ընտրական հանձնաժողովին, ընդ որում այդ դեպքում Կենտրոնական ընտրական հանձնաժողովը նշանակում է նոր ընտրություններ ոչ ուշ, քան առաջին ընտրությունից երկու շաբաթ հետո:



ՀՈԴՎԱԾ 97. Պատգամավորության թեկնածուների վերաքվեարկումը, ինչպես նաև ոչ-վավերական ճանաչվածների փոխարեն կատարվելիք նոր ընտրությունները տեղի յեն ունենում առաջին ընտրությունների համար կազմված ընտրողների ցուցակներով և լրիվ համապատասխան սույն «Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի ընտրությունների կանոնադրության»:

ՀՈԴՎԱԾ 98. Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի կազմից պատգամավորի դուրս գալու դեպքում Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի Նախագահությունը 2 շաբաթվա ընթացքում համապատասխան ընտրական օկրուգում նշանակում է նոր պատգամավորի ընտրությունների ժամկետը, սակայն ոչ ուշ, քան Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի կազմից պատգամավորի դուրս գալուց 2 ամիս հետո:

ՀՈԴՎԱԾ 99. Ամեն ոք, ով բռնության, խաբեբայության, սպառնալիքների կամ կաշառքի միջոցով խոչընդոտ կհանդիսանա Հայկական ԽՍՀ քաղաքացուն՝ Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի պատգամավոր ընտրելու կամ ընտրվելու իր իրավունքն իրականացնելու գործում, —

*պատժվում է ազատազրկմամբ մինչև 2 տարի ժամանակով:*

ՀՈԴՎԱԾ 100. *Խորհրդի այն պաշտոնատար անձը կամ ընտրական հանձնաժողովի անդամը, որը կկեղծի ընտրական փաստաթղթերը կամ դիտավորյալ կերպով սխալ կհաշվի ձայները,—պատժվում է ազատազրկմամբ մինչև 3 տարի ժամանակով:*

ՀԱՅԿԱԿԱՆ ԽՍՀ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԳՈՐԾԱԴԻՐ ԿՈՄԻՏԵՑԻ ՆԱԽԱԳԱՀԻ

ՊԱՇՏՈՆԱԿԱՏԱՐ՝ Մ. ՊԱՊՅԱՆ

ՀԱՅԿԱԿԱՆ ԽՍՀ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԳՈՐԾԱԴԻՐ ԿՈՄԻՏԵՑԻ ՔԱՐՏՈՒՂԱՐԻ

ՊԱՇՏՈՆԱԿԱՏԱՐ՝ Լ. ԳԱԼՍՏՅԱՆ



**Ռ. ՅՈՒ. ՇՄԻԴՏ**

# ՍՏԱԼԻՆՅԱՆ ԴԱՐԱՇՐՋԱՆԻՆ ԱՐԺԱՆԻ ՍԽՐԱԳՈՐԾՈՒԹՅՈՒՆ

*Հազիվ թե մարդկության պատմության մեջ յերբևիցե ամբողջ աշխարհի ուշադրությունն այդպես լարված կերպով կենտրոնացած է յեղել ընդամենը չորս հոգուց բաղկացած մի փոքր խմբի հետազոտողների բախտի ու աշխատանքի վրա: Իննը ամիս է, ինչ մեր յերկիրը և բոլոր յերկրների առաջավոր մարդիկ հրճվանքով, պարծանքով և դրա հետ միասին ակամա տագնապով հետևում եյին Հյուսիսային բևեռից Բևեռային ավազա—*

նով ու Գրենլանդական ծովով ճանապարհ կտրող չորս հերոսներին։

Չորս խիզախները—Պապանինը, Կրենկելը, Շիրշովը, Ֆյոդորովը—յերկրագնդի գագաթի վրա իրենց հերոսական հայրենիքի իսկական ներկայացուցիչներն եյին։

Ըստ էության Պապանինի խումբը կատարեց վոչ թե մեկ, այլ ամբողջ յերեք եքսպեդիցիաներ, վորոնցից յուրաքանչյուրն առանձին վերցված արդեն բավական եր, վորպեսզի մտներ բևեռային հետախուզությունների պատմության մեջ և փառքով ծածկեր բևեռախույզների հայրենիքը։ Այդ յերեք եքսպեդիցիաները կազմում են—նախ՝ թռիչքը Հյուսիսային բևեռ, կայանի հիմնումը բևեռում և գիտական աշխատանքը բևեռի շրջանում. յերկրորդ՝ դրեյֆը բևեռից մինչև Գրենլանդիայի ափերը Բևեռային ավազանով, յերբեք չհետազոտված վայրերում կատարված գիտական հետազոտություններով. յերրորդ՝ դրեյֆը ամբողջ Գրենլանդական ծովով, գիտական հետազոտություններ կատարելով այնպիսի վայրերում, վորոնք համարյա անհայտ եյին։

Այդ յերեք աշխատանքները միասին վերցված մեծագույն աշխարհագրական իրադար-



ձություն են հանդիսանում վերջին տասնամյակներում։

Բոլորի հիշողության մեջ դեռ թարմ է հրճվանքն այն լուրի համար, վոր 1937 թվի մայիսի 21-ին խորհրդային ինքնաթիռը հաջողությամբ վայրեջք կատարեց Հյուսիսային բևեռի շրջանում և եքսպեդիցիայի մասնակցողները ձեռնամուխ յեղան սառույցի վրա կայանի կառուցմանը։ Մենք այն ժամանակ գրեցինք, վոր խորհրդային մարդկանց գիտարշավը դեպի բևեռ, հանդիսանում է Արկտիկայի յուրացման ստալինյան պլանի իրականացման ուղղությամբ կատարվող բազմամյա աշխատանքի բնական ավարտումը։

Մեր խնդիրը և նրա լուծումը—խոշոր ինքնաթիռների ամբողջ ջոկատի թռիչքը բևեռ և կայանի յերկարատև բազմամսյա գոյությունը սառցադաշտի վրա—կատարյալ անսպասելի մի բան հանդիսացավ աշխարհի համար։ Սակայն այդ նախապատրաստված եր Հյուսիսային ծովային ճանապարհը բաց անելու, բևեռային կայանների ցանց ստեղծելու և բևեռային ավիացիայի զարգացման ուղղությամբ կատարված մեր ամբողջ նախորդ աշխատանքով։ Բևեռային եքսպեդիցիայի նախապատրաստման գործում հատ-

կապես մեծ դեր խաղաց հելյուսկինյան էպոպեյը:

Չորս տարի սրանից առաջ Չուկոտյան ծովում ապրելով սառցադաշտի վրա, մենք ձեռք բերինք հսկայական փորձ: Մենք սովորեցինք ապրել ու աշխատել սառույցի վրա, իսկ մեր հերոս օդաչուները ցույց տվին, վոր կարող են լողացող սառույցների մեջ գտնել առաջադրված կետը և վայրէջք կատարել սառույցի վրա:

Դեպի Հյուսիսային բևեռ ուղարկված անցյալ տարվա էքսպեդիցիան ինքնըստինքյան խոշորագույն մի հաղթանակ էր, մի նոր քայլ դեպի առաջ՝ մեր ավիացիայի զարգացման գործում: Բայց Պապանինի խմբի համար այդ միայն սկիզբն էր: Յերբեք չեմ մոռանա, թե ինչպես Պապանինը, հենց վոր ինքնաթիռից իջավ բևեռի վրա, անմիջապես իրեն զգաց նրա տերը, տեղ ընտրեց կայանի համար և սկսեց առանց րոպե կորցնելու խփել վրանները, գործունյա կերպով շտապեցրեց բոլորին արագորեն իջեցնել բեռը և տեղավորել իր ունեցվածքը:

16 օր մենք ապրեցինք բևեռում, Պապանինի խմբի հետ: Այդ լավ էր: Վորքան էլ թեկուզ քաջարի էյին մեր չորս բևեռախույզները, բայց այնուամենայնիվ նրանց



համար ավելի դժվար կլիներ, յեթե ինքնաթիռը միանգամից հենց օդ բարձրանար, նրանց թողնելով մենակ: Այդ 16 օրվա ընթացքում մենք մեծ կոլեկտիվով «բնակեցրինք» սառցադաշտը: Բոլոր ինքնաթիռների անձնակազմերն օգնում էյին կայանի կառուցմանը:

Կրենկելն անմիջապես սկսեց անհերթափոխ ռադիոպահակություն, իսկ Շիրշովը և Ֆյոդորովը, դեռևս մեր այնտեղ յեղած ժամանակվանից, ծավալեցին գիտական աշխատանքը: Առաջին իսկ դիտողությունները տվին զգալի արդյունքներ, քանդելով գիտական գրականության մեջ յեղած վորոշ պատկերացումներ:

Հսկայական, բավականաչափ հարթ սառցադաշտերի—բնական օդանավակայանների առկայությունը հաստատեց մեր այն յենթադրությունը, վորի վրա հիմնված էր էքսպեդիցիայի ամբողջ պլանը և հերքեց Արևմուտքում տարածված պատկերացումը՝ բևեռի շրջանում ճեղքվածքների և տորոսների (սառցաբեկորների) առատության մասին: Ովկիանոսի խորությունը՝ 4290 մետր՝ անսպասելի կերպով մեծ էր (Պիրին չափել էր ավելի քան 2000 մետր, բայց մինչև հատակը չէր հասել) և մեկ ընդմիշտ վերջ

ղրկեց բևեռի շրջանում հողի գոյության լե-գենդին: Դեռևս մեր այնտեղ յեղած ժամա-նակ ձյան ճնճղուկի, իսկ նրա հետևից Թանձրահավի և որորի յերևալը զարմաց-րին կենդանաբաններին, վորոնք չեյին յեն-թադրում, թե հնարավոր է, վոր թռչունն այդքան հեռու թռչի յերկրից:

Իսկ հատկապես հետաքրքիր եր սառցա-դաշտի դրեյֆը, վորը նկատվեց բևեռի մոտ մեր վայրեջքի առաջին իսկ որվանից: Դրեյֆի ուղղությունը միանգամից նշվեց դեպի միջորեականին զուգահեռ ուղղու-թյամբ: Այդ ուղղությունն էլ հենց մնաց վորպես պապանինյան սառցադաշտի գլխա-վոր ուղղությունը հետագա ժամանակաշըր-ջանում:

Հենց այդտեղ, բևեռում, կատարվեցին մագնիսային և հիդրոլոգիական առաջին դիտողությունները: Այդ տվյալների գու-մարը միանգամից հենց մեծապես հարստաց-րեց Կենտրոնական բևեռային ավազանի մա-սին յեղած գիտելիքների մեր աղքատիկ պա-շարը: Այդ գիտելիքները չափից դուրս հա-րստացան պապանինականների հետագա աշխատանքի ընթացքում, նրա յերկրորդ ե-տապում—բևեռից մինչև Գրենլանդիայի հյուսիս-արևելյան ափերը տանող ճանա-



պարհին: Կայանի աշխատանքի յերկրորդ ետապն ընդգրկում է մի կիսամյակ՝ հու-լիսից—մինչև նոյեմբեր, վորի ընթացքում կայանը Հյուսիսային բևեռից Բևեռային ավազանի վրայով դրեյֆեց մինչև Գրենլան-դական ծովի մուտքը:

Չորս խիզախ հետազոտողները մնացին մենակ: Իր լարվածությամբ և սառցադաշ-տի վրա կյանքին սպառնացող վտանգների համարձակ հաղթահարմամբ այդ ժամանա-կաշրջանը կարելի յե դասել Պիրիի՝ դեպի բևեռ կատարած արշավանքի կամ Նանսենի ու Իոհանսենի հուշակավոր սահնակային ճանապարհորդության կողքին, վորոնք դուրս գալով «Ֆրամ» նավից հասան մինչև 86-րդ զուգահեռականը և այնտեղից մինչև Ֆրանց Իոսիֆի Յերկիրը: Բայց գիտական արդյունքների տեսակետից, «Հյուսիսային բևեռ» կայանի աշխատանքն իր նախորդնե-րին շատ հեռու՝ հետևումն է թողնում: Նանսենն ուշադրավ հետազոտություններ կատարեց, քանի դեռ գտնվում եր «Ֆրամի» վրա: Իսկ սահնակային ճանապարհորդու-թյան ընթացքում նա իր ուղեկցի հետ միա-սին ամբողջապես կլանված եր կյանքի հա-մար պայքարելով և չեր կարող կանգ առնել գիտական լուրջ հետազոտություններ կա-

տարելու համար, բացի դրանից նա չէր կարողացել իր հետ վերցնել անհրաժեշտ ապարատներ: Հայտնի չէ նաև, թե գիտական հետազոտությունների համար որքան քիչ ժամանակ նվիրեց Պիրին, դեպի բևեռ կատարած իր արշավանքի ժամանակ:

Միանգամայն այլ կերպ էր ընթանում մեր կայանի աշխատանքը: Չորս հետազոտողները բառիս բուն իմաստով ոչ մի որ անց չէյին կացնում առանց ամենալուրջ գիտական հետազոտությունների: Կարելի է համարձակորեն ասել, որ կենտրոնական բևեռային ավազանի իսկական գիտական հետազոտությունն առաջին անգամ կատարվեց հենց պապանինյան քառյակի կողմից: Մարդկանց արիությունն այստեղ բազմապատկվեց նորագույն տեխնիկայով: Կայանը զինված էր բազմապիսի ապարատներով, իսկ մարդիկ այդ ապարատներն ոգտագործեցին նրանց ամբողջ կարողությամբ: Չորս խիզախներից յուրաքանչյուրն աշխատում էր ոչ թե մեկ, այլ մի քանի մասնագիտությամբ և նրանք դեպի իրենց խնդիրը վերաբերվեցին պարտքի մեծագույն գիտակցումով:

Չափազանց եյական է, որ Պապանինի ճամբարն ուներ էներգիայի յերկու աղ-



բյուրներից ոգտվող ռադիոկայան—քամու և նավթի շարժիչներով: Կրենկելի բարձր հմտության և բոլոր մեխանիզմների մասին Պապանինի հոգատարության շնորհիվ, ռադիոկայանի աշխատանքը ոչ մի որ չընդհատվեց: Ձմեռողները ոչ միայն ռադիոյով հաղորդում էյին իրենց գիտական հետազոտությունների արդյունքներն ամփոփող տեղեկագրեր, այլև պարբերաբար, որը մի քանի անգամ օդերևութաբանական տեղեկություններ էյին հաղորդում Մոսկվա՝ Յեղանակի կենտրոնական բյուրոյին: Այդ տեղեկություններն ունեյին խոշորագույն նշանակություն, լրացնելով յեղանակի գուշակության համար անհրաժեշտ տվյալների պակասող ողակը:

Դեռևս դրեյֆի սկզբում, Կրենկելի ռադիոկայանը կատարում էր ամենապատասխանատու մի ֆունկցիա—սպասարկում էր Խորհրդային Միության հերոսներ Չկալովի և Գրոմովի պատմական թռիչքները: Չի կարելի թերագնահատել նաև այն փաստի նշանակությունը Չկալովի և Գրոմովի ինքնաթիռների անձնակազմի համար, որ նրանք Սառուցյալ Ովկիանոսի վրա իրենց մենակ չէյին զգում: Նրանք գիտեյին, որ ԽՍՀՄ ափերից մինչև ԱՄՆ-ի ափերը, իրենց ճանա-

պարհի մեջտեղում, կա հարազատ խորհըրդային մարդկանց ավան:

Բնության յերևույթները փոփոխվում են տարածության և ժամանակի մեջ: Այդ պատճառով, նրանց ուսումնասիրությունը կարելի յե կատարել յերկու հիմնական մեթոդով: Դրանցից մեկն այն է, վոր պետք է հիմնվել մի տեղում, մանրամասն արձանագրել յեղանակի, յերկնային մարմինների և այլ փոփոխությունները՝ ժամանակվա ընթացքում: Այդպես են աշխատում մեր այն բևեռականները, վորոնք գտնվում են մայր ցամաքի և կղզիների վրա: Մյուս մեթոդն է—շարժվել մեկ տեղից մյուսը, հետազոտելով այդ յերևույթների փոփոխությունները՝ տարածության մեջ: Այդպես են աշխատում եքսպեդիցիոն նավերը:

Դրեյֆող կայանն իր մեջ միացրեց յերկու մեթոդներն էլ, իրենց առավելություններով: Կայանն անցավ ամբողջ Բևեռային ավազանը, այդ ժամանակվա ընթացքում սպառիչ տվյալներ հավաքելով ծովի հատակի ռելյեֆի, նրա հոսանքների ու կյանքի վերաբերյալ: Կայանը կատարեց հիդրոլոգիական լրիվ կտրվածք՝ բևեռից մինչև Գրենլանդական ծովը, իր ճանապարհի ամբողջ յերկարության ընթացքում պարզելով ջրի



պանազան շերտերի քիմիական կազմվածքը, աղիությունը, ջերմաստիճանը, վորոնցից մի քանիսը գալիս են հյուսիսից, իսկ մյուսները (ավելի թանձր և աղի)—Ատլանտյան ովկիանոսից: Մյուս կողմից, կայանը դրեյֆում եր բավականաչափ դանդաղ, վորը հետազոտողներին հնարավորություն եր տալիս իրենց դիտողություններն ու հետևությունները կատարել առանց շտապելու և յուրաքանչյուր կետում դիտել այնպիսի յերևույթների փոփոխությունները՝ ժամանակի մեջ, ինչպիսին է որինակ մագնիսային ուժի վարիացիան:

Պապանինի սեղմ ամփոփագրերը դիտական աշխատանքների մասին, ագահությամբ կարդում եյին ամբողջ աշխարհում: Բայց այդ ամփոփագրերի հետևում թաքնված են նախնական նյութերի հսկայական կույտեր, վորոնց հրատարակումը պապանինականների վերադառնալուց հետո, կգրավի մի քանի հատորներ: Այժմ մենք իսկապես ծանոթ կլինենք բևեռային ավազանի կարևորագույն մասի հետ:

Նոյեմբերին այն սառցադաշտը, վորի վրա գտնվում եր «Հյուսիսային բևեռ» կայանը, մտավ Գրենլանդական ծովը: Սկսվեց եքսպեդիցիայի յերրորդ ետապը: Կարող է թվալ,

վոր առաջին յերկու ետապներն էլ բավական եյին և վոր Գրենլանդական ծովի մուտքի մոտ մեր խիզախ բևեռախույզներին արդեն կարելի յեր վերցնել սառցադաշտի վրայից: Այդ բանը չարվեց վոչ այնքան այն պատճառով, վոր այդպիսի գործողությունը ձմեռ ժամանակ, բևեռային գիշերվա պայմաններում ներկայացնում եր անտարակույս դըժվարություններ, վորքան յելնելով այն նկատառումներից, վոր Գրենլանդական ծովի, հատկապես նրա հյուսիս-արևմտյան մասի ուսումնասիրությունը բացառիկ նշանակություն ունի գիտության և բևեռային ծովագնացության համար: Մեր բևեռախույզներն ուրախությամբ շարունակեցին աշխատանքը:

Գրենլանդական ծովը բացառիկ կերպով յուրահատուկ է: Պարփակված լինելով Գրենլանդիայի, Իսլանդիայի և Շպիցբերգենի միջև, այն հանդիսանում է Սառուցյալ և Ատլանտյան ովկիանոսների փոխներգործության գլխավոր ասպարեզը: Գրենլանդական ծովով Սառուցյալ ովկիանոսն է ներհոսում Ատլանտյան տաք ջրերի զգալի մասը: Սառուցյալ ովկիանոսից հոսանքը դուրս է բերում հսկայական քանակությամբ բևեռային սառույց:



Գրենլանդական ծովի արևելյան մասի առավել լիակատար հետազոտությունը կատարել է մեր խորհրդային այն եքսպեդիցիան, վորը 1935 թվին «Սադկո» սառցահատով ուղևորվեց դեպի մեծ լայնություններ: Այդ եքսպեդիցիան ղեկավարում եր Գ. Ա. Ուշակովը, եքսպեդիցիային մասնակցում եյին ովկիանոսագետ պրոֆ. Զուբովը, հիդրոլոգ Բերեզկինը և ուրիշները: Իսկ արևմըտյան մասում, Գրենլանդիայի ափերի մոտ, հետազոտությունները կատարվում եյին մեծ դժվարությամբ, վորովհետև բևեռային սառույցի հուժկու հոսանքը փակում եր նավերի ճանապարհը, հաճախ նրանց ներգրավում եր դրեյֆի մեջ և խորտակում: Այդ յեղանակով դեռ 1777 թվին սեղմվեցին սառույցների մեջ, յերկար ժամանակ դրեյֆեցին և վերջի վերջո խորտակվեցին 12 կետորս նավեր: Հետաքրքիր դրեյֆ կատարեց 1869—1870 թվականի ձմռան ընթացքում գերմանական արկտիկական եքսպեդիցիան, «Գանզա» նավով: Նավը խորտակվեց 70 աստիճան 51 րոպե լայնության վրա: Անձնակազմն իջնելով սառույցի վրա շարունակեց դրեյֆը և յոթ ամիս հետո, արդեն հեռու հարավում, 61-րդ զուգահեռականի վրա, դուրս յեկավ

Գրենլանդիայի ափը: Գրենլանդական ծովն ուսումնասիրելու մյուս փորձերից ուշադրության արժանի յե նաև 1859 թվին «Բելգիկա» նավով կատարված եքսպեդիցիան:

Ուշագրավ է, վոր այդ բոլոր եքսպեդիցիաները տալիս են արևելա-գրենլանդական հոսանքի սառույցների դրեյֆի արագության միանգամայն տարբեր մեծություններ—օրական 2-ից մինչև 14 մղոն: Պապանինի կայանի դրեյֆը յեղավ ել ավելի արագ, նայած ծովի վիճակին ու քամու ուժին, տատանվելով օրական 10—20 մղոնի միջև: Մինչդեռ նախորդ հետազոտողները սահմանափակվում եյին գերազանցապես ավելի հարավ ընկած շրջաններով, պապանինականներն ամբողջ դրեյֆը կատարեցին Գրենլանդական ծովի ամենահյուսիսային ծայրից, համարյա 70-րդ զուգահեռականը, այսինքն ամենից ավելի պակաս չափով մատչելի շրջաններում:

Այդ դրեյֆի ժամանակ Շիրշովի և Ֆյոդորովի կատարած հետազոտությունները ունեն վոչ միայն տեսական, այլև գործնական խոշորագույն նշանակություն: Սառույցների արտահոսումը Սառուցյալ օվկիանոսից, ներկայացնում է այնպիսի մի յերևույթ, վորը մենք պետք է շատ լավ գի-



տենանք, վորպեսզի կարողանանք պատկերացնել ամբողջ օվկիանոսում նրա շարժման վողջ բալանսը: Բավական է միայն հիշատակել, վոր մի քանի հետազոտողների հաշիվներով, այդ հոսանքն ամեն տարի դուրս է բերում Սառուցյալ օվկիանոսի սառույցների ընդհանուր քանակության մոտ մեկ յերրորդ մասը: Բացի դրանից, գոյություն ունի խոր և մինչև այժմ դեռ չբացատրված կապ դուրս բերվող սառույցի՝ զանազան տարիներում վոչ կայուն քանակության, Գոլֆշտրեմի ջերմաստիճանի, օվկիանոսի խորհրդային ափերի սառցակալության և Ատլանտյան օվկիանոսի հյուսիսում յեղանակի տիրապետող տիպի միջև: Մեր գիտնականները—Վիզեն, Զուբովը և Շուլեյկինը պարզեցին և մասամբ բացատրեցին մի շարք հետաքրքիր օրինաչափություններ: Բայց հարցը մինչև վերջ դեռ պարզ չէ: Մինչդեռ հենց այդ կապակցության մեջ է գտնվում սառցային կանխագուշակման բանալին, այսինքն սառցային նավարկության պայմանների կանխորոշումը, թեկուզ և վեց ամսով առաջ:

Յերրորդ խնդիրը թերևս ամենավտանգավորն եր Պապանինի խմբի համար: Մեկ անգամ չեն խորհրդային մարդկանց արտերն

արպաշաթափ խփել հումկու հոսանքի մեջ ընկած, Գրենլանդիայի ափերի յերկարությամբ քշվող մեր քաղաքացիների մասին մտածելիս, այնպիսի պայմաններում, յերբ սառցադաշտն ամեն որ կարող եր ճեղքվածքներ տալ ու կոտրատվել քամու ճնշման ազդեցության տակ:

Եքսպեդիցիայի գիտական արդյունքներն արդարացրին այդ ռիսկը: Մեր չորս ընկերների արիությունն ու փորձը հաղթահարեց բոլոր վտանգները, իսկ յերկիրը մոբիլիզացիայի յենթարկեց հզոր միջոցներ, պատմական եքսպեդիցիան բարեհաջող ավարտելու համար:

«Հյուսիսային բևեռ» կայանը տվեց ամենահարուստ գիտական արդյունքներ: Դրանից մի մասը համառոտակի նշվեցին վերևում: Անհրաժեշտ է ընդգծել ամենագլխավոր արդյունքներից մեկը — բևեռային սառույցի, դրեյֆի բնույթի վերջնականապես սահմանումը, վոր մեզ հասցնում է անմիջականորեն այդ յերևույթի պատճառների ըմբռնմանը, վորը յերկար ժամանակ մնում եր հանելուկային:

«Հյուսիսային բևեռ» կայանի անձնակազմը վոչ միայն վերջնականապես սահմանեց սառույցների դրեյֆի ուղղությունն ու



արագությունը, այլև իր հիդրոլոգիական աշխատանքներով ցույց տվեց, վոր Ատլանտյան ջրերը մեծ չերտով ներհոսում են Բևեռային ավազանը, հումկու հորձանքով մտնելով նաև Հյուսիսային բևեռի շրջանը:

Հերոսական բևեռային եպոպեյի ավարտումն արժանի յեր նրա սկզբնավորմանը: Սկզբում յերկիրը տվեց իր լավագույն ոդաչուներին և հզոր ինքնաթիռները՝ դրեյֆող կայանը հասցնելու և այնտեղ իջեցնելու համար: Կայանը սառցադաշտից վերցնելու համար խորհրդային կառավարությունն ուղարկեց չորս բևեռային նավեր — այդ թվում յերեք սառցահատ, վորոնք իրենց վրա ունեն ինքնաթիռներ:

Պապանինականների խումբը սառցադաշտից վերցնելու ուղղությամբ կառավարական միջոցառումների լայն մասշտաբը միահամուռ արձագանք գտավ ամբողջ յերկրում: Խորհրդային ժողովուրդն ուժեղ սիրեց իր հերոսներին: Խիզախ քառյակի մասին հյուսվեցին յերգեր: Յուրաքանչյուրին առանձին մոտիկից ճանաչում է ամբողջ յերկիրը: Ի զուր չե, վոր բոլոր չորսն էլ ընտրվեցին ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի պատգամավոր:

Դրեյֆի վերջին շրջանն անցնում եր

տագնապալից: Սառցադաշտը կոտրատվեց, բնակելի վրանը խորտակվեց: Բայց մեր չորս խիզախ ընկերները չզիջեցին տարերքի առաջ: Նրանք սառցակտորի վրա ես կարողացան ամրանալ և շարունակել աշխատանքը:

Բայց աճում էր վոչ անհիմն տագնապը՝ նրանց բախտի համար: Հարկավոր էր արագացնել պապանինականներին սառույցից վերցնող էքսպեդիցիայի ծով դուրս գալը: Այստեղ գործնականում դրսեվորվեց ժողովրդի սերը, դրսեվորվեց մեր կառավարության միասնությունը ժողովրդի հետ՝ խիզախ քառյակի էքսպեդիցիան արագ կերպով ու վճռականորեն ավարտելու և նրանց հայրենի հողը վերադարձնելու ցանկության մեջ:

Ընկեր Ստալինն ամեն որ անձամբ ցուցումներ էր տալիս, ստուգում էր պապանինականներին ոգնության ուղարկվող էքսպեդիցիայի պատրաստականությունը և շտապեցնում էր մեզ — Հյուսիսի աշխատողներիս:

Ընկեր Ժդանովը Լենինգրադում իր մոտ հրավիրեց նավաշինական արդյունաբերական աշխատողներին: Նա մերժեց «Յերմակի» վերանորոգման այն պլա-



նը, վոր ներկայացրել էյին ինժեներները, թեև այդ պլանը նախատեսում էր սեղմ ժամկետներ, և պահանջեց էլ ավելի արագացնել վերանորոգումը: Կուսակցության և կառավարության կոչը հսկայական խանդավառություն առաջացրեց և սառցահատը վերանորոգվեց չտեսնված կարճ ժամկետում: Նույնը կատարվեց նաև «Թայմիր» սառցահատը Մուրմանսկից ուղարկելիս:

Լենինգրադի և Մուրմանսկի կարմիրնավաստորմայիններն իրենց հրամանատարության գլխավորությամբ բացառիկ ոգնություն ցույց տվին էքսպեդիցիային: Անմոռանալի յե այն պատկերը, յերբ Բալթիկայի հազարավոր կարմիրնավաստորմայինները նվագախմբերի հնչյունների տակ, ուրախ յերգերով ածուխ էյին բեռնում «Յերմակի» վրա:

Պապանինի, Կրենկելի, Շիրշովի և Ֆյոդորովի աշխատանքը մեծ պայծառ տերև ես հյուսեց մեր հայրենիքի փառքի, ստալինյան դարաշրջանի փառքի դափնյա պսակին:

Բալթիկ ծով,
«Յերմակ» սառցահատի տախտակամած
(Հաղորդված է ռադիոյով):

## ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԱՌԱՐԱՆ

# ԹԵՐԹԵՐՈՒՄ ՀԱՆԴԻՊՈՂ ԱՌԱՆՁԻՆ ԲԱՌԵՐԻ ՅԵՎ ՀԱՍԿԱՑՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԲԱՑԱՏՐՈՒԹՅՈՒՆԸ

ԱՆԴԵՖԻՑԻՏԱՅԻՆ ԲՅՈՒՋԵ.— Բյուջե կոչվում ե պետական ծախսերի և յեկամուտների ամփոփումը: Յեթե ծախսերը բյուջեյի մեջ ավելի յեն, քան յեկամուտները, ապա այդպիսի բյուջեն կոչվում ե դեֆիցիտային: Իսկ յեթե ընդհակառակը, ծախսերը պակաս են յեկամուտներից, կամ հավասար են յեկամուտներին, ապա այդպիսի բյուջեն կոչվում ե անդեֆիցիտային: Ներկայումս ԽՍՀՄ-ը մեկն ե այն փոքրաթիվ խոշոր յերկրներից, վորտեղ պետական բյուջեն անդեֆիցիտային ե: Շատ կապիտալիստական պետությունների, այդ



թվում նաև այնպիսի հարուստ պետությունների, ինչպիսին ե ԱՄՆ-ը, չնայած բոլոր ջանքերին, չի հաջողվում հասնել անդեֆիցիտային բյուջեյի: Ֆաշիստական յերկրները, սպառազինման վրա կատարվող միանգամայն ուժից վեր ծախսերի հետևանքով, մշտապես ունենում են դեֆիցիտային բյուջե: Ճապոնիայում 1937–1938 բյուջետային տարում (վորը պետք ե ավարտվի 1938 թվի ապրիլի 1-ին) պետական ծախսերը կազմում են մոտ 5,4 միլիարդ իեն: Իսկ յեկամուտները մոտավորապես միայն 2 միլիարդ իեն: Այդպիսով, դեֆիցիտը հավասար ե մոտ 3,5 միլիարդ իենի: Ճապոնական բյուջեյի հսկայական դեֆիցիտը վկայում ե յերկրի տնտեսական օրգանիզմի վիթխարի հյուծման մասին և ֆինանսական կրախ ե սպառնում յերկրին:

ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ԿԱԲԻՆԵՏ.— Գործադիր իշխանության գերագույն օրգանն ե բուրժուական պետություններում: Մինիստրների կաբինետն այլ կերպ կոչվում ե մինիստրների խորհուրդ, կամ ել ավելի հաճախ — կառավարություն: Այն կազմված ե մինիստրներից և նրանց տեղակալներից (վորոնք սովորաբար կոչվում են մինիստրի ոգնականներ): Մինիստրների խորհուրդը

գլխավորում է մինիստրների խորհրդի նախագահը: Նա այլ կերպ կոչվում է վարչապետ, կաբինետի ղեկավար կամ կառավարության ղեկավար: Սկզբնական շրջանում կառավարությունը մինիստրների կաբինետ եր կոչվում միայն այն յերկրներում, որտեղ սահմանադրության համաձայն բոլոր մինիստրները կոլեկտիվ կերպով պատասխանատվություն են կրում ամբողջ կառավարության քաղաքականության համար և կոլեկտիվ կերպով այդ քաղաքականության համար պատասխանատու յեն պարլամենտի առաջ (օրինակ Ֆրանսիայում, Անգլիայում): Այստեղից ել հենց ծագել է նրա անունը— կաբինետ, այսինքն միավորում, մինիստրների կոլեկտիվ: Սակայն այժմ հաճախ կառավարությունը՝ մինիստրների խորհուրդ է կոչվում նաև այն յերկրներում, որտեղ մինիստրները կոլեկտիվ պատասխանատվություն չեն կրում կառավարության քաղաքականության համար և որտեղ նրանք պատասխանատու չեն պարլամենտի առաջ: Օրինակ, Ֆաշիստական յերկրներում կառավարությունը հաճախ կոչվում է մինիստրների կաբինետ, թեև այդ յերկրներում մինիստրները ոչ մի կոլեկտիվ պատասխա-



նատվություն չեն կրում և առհասարակ ըստ եության անպատասխանատու յեն: Գերմանիայում նրանք հանդիսանում են պարզապես Հիտլերի կամակատարները, Իտալիայում՝ Մուսսոլինիի կամակատարները, իսկ Ճապոնիայում պարում են ռազմական շրջանների նվագի տակ:

ԿՈԱԼԻՑԻԱ.— Միավորում, համաձայնություն: Այդ բառը գործածվում է ամենատարբեր նշանակություններով: Օրինակ, կարելի յե խոսել պետությունների կոալիցիայի մասին, այսինքն մի քանի պետությունների համաձայնության մասին, որոնք պայմանավորվում են համատեղ պատերազմի դուրս գալ մի որևէ պետության կամ մի խումբ պետությունների դեմ: Կարելի յե խոսել այսպես կոչված՝ կոալիցիայի իրավունքի մասին, այսինքն կապիտալիստական մի շարք յերկրներում գոյություն ունեցող այն իրավունքի մասին, որ բանվորները կարող են միավորվել իրենց շահերը կոլեկտիվ կերպով պաշտպանելու համար (Ֆաշիզմը ոչնչացնում է համառ պայքարի տասնամյակների ընթացքում նվաճված այդ իրավունքը, որ բանվոր դասակարգը ձեռք է բերել հսկայական զոհերի գնով): Վերջապես, կոալիցիա յե

կոչվում նաև մի քանի կուսակցությունների և քաղաքական խմբավորումների համաձայնությունը՝ համատեղ յելույթների համար, վորևե կամպանիա համատեղ անցկացնելու համար, ընտրություններին համատեղ մասնակցելու համար, կամ կառավարությանը համատեղ մասնակցելու համար: Այն կառավարությունը, վորին մասնակցում են մի քանի կուսակցությունների ներկայացուցիչներ, կոչվում է կոալիցիոն կառավարություն: Վորպես որինակ հիշեցնենք մի շարք կոալիցիոն կառավարություններ, վորոնք գոյություն են ունեցել Ռուսաստանում 1917 թվի փետրվարյան հեղափոխության և Հոկտեմբերյան Սոցիալիստական մեծ հեղափոխության միջև ընկած ժամանակաշրջանում (այդ կառավարությունները գլխավորում եյին սկզբում իշխան Լվովը, այնուհետև Կերենսկին): Ինչպես ցույց են տալիս այս և շատ ուրիշ որինակներ, կոալիցիոն կառավարությունները սովորաբար հանդիսանում են վերնախավային կարճատև կոմբինացիաներ և վոչ մի հենարան չեն ունենում մասսաների մեջ: Կոալիցիաները ստեղծվում են բուրժուազիայի կողմից, մասսաներին խաբելու և իրենց տիրապետությու-



նը պահպանելու նպատակներով: Նրանց ամբողջ գործունեյությունը յենթարկված է բուրժուազիայի շահերին:

ԿՈՄՄԻՎՈՅԱԺԵՐ — Ստույգ կերպով, այդ բառը նշանակում է «հանձնարարությամբ ճանապարհորդող»: Այդպես են կոչվում սովորաբար առևտրական ֆիրմաների շրջիկ գործակալները, վորոնք ճանապարհորդում են իրենց հետ վերցնելով ապրանքների նմուշներ և գնորդներ են գրավում իրենց ֆիրմաների համար: Քաղաքական բառարանում այդ խոսքը գործածվում է իրոնիկ (ծաղրական) իմաստով, նշանակելով՝ որինակ այնպիսի քաղաքական գործիչ, վորը կատարում է այլ յերկրի կառավարության հանձնարարություններ, վորոնք հակասում են իր հայրենիքի շահերին: Հենց այդ իմաստով էլ Լեհաստանի արտաքին գործերի մինիստր Բեկին անվանում են գերմանական ֆաշիզմի կոմմիվոյաժեր:

ԱՄԵՐԻԿԱԿԱՆ ԿՈՆԳՐԵՍ — Այդպես է կոչվում ԱՄՆ-ում պառլամենտը: Ամերիկական կոնգրեսը բաղկացած է յերկու պալատից—վերին՝ կամ սենատ, և ստորին՝ կամ ներկայացուցիչների պալատ: Սենատը բաղկացած է 96 անդամից (սենատորնե-

րից), յերկուական հոգի ԱՄՆ-ի մեջ մըտնող 48 նահանգներից յուրաքանչյուրի կողմից։ Նրանք ընտրվում են 6 տարի ժամանակով, բայց ընտրությունները կատարվում են յուրաքանչյուր յերկու տարին մեկ անգամ, ըստ վորում յուրաքանչյուր ընտրության ժամանակ նորոգվում ե սենատի կազմի միայն յերրորդ մասը։ Ներկայացուցիչների պալատն զգալիորեն ավելի անդամներ ունի, քան սենատը։ Յուրաքանչյուր նահանգի կողմից այդ պալատն ուղարկվող պատգամավորների թիվը կախված ե տվյալ նահանգի բնակչության թվից։ Ներկայացուցիչների պալատի անդամներն ընտրվում են յերկու տարի ժամանակով։ Ամբողջ պետության համար ընդհանուր ընտրական օրենք գոյություն չունի։ Տարբեր նահանգներում ընտրական օրենքները տարբեր են։

Սենատի կամ ներկայացուցիչների պալատի ընտրություններից անհամեմատ ավելի մեծ նշանակություն ունեն ԱՄՆ-ում պրեզիդենտի ընտրությունները (չորս տարին մեկ անգամ)։ ԱՄՆ-ի պրեզիդենտը մեծ իշխանություն ունի և պատասխանատվություն չի կրում կոնգրեսի առաջ։ Մինիստրները (նրանք ԱՄՆ-ում կոչվում են



քարտուղարներ) նույնպես պատասխանատվություն չեն կրում կոնգրեսի առաջ, իրենց աշխատանքի համար պատասխանելով միայն պրեզիդենտի առաջ։

ՀՅՈՒՊԱՏՈՍԱՅԻՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՑՉՈՒԹՅՈՒՆ.—Մեկ պետության ներկայացուցչությունը մյուսում հիմնականում իրականացվում ե դեսպանների, կամ (յեթե խոսքը վերաբերում ե ԽՍՀՄ ներկայացուցիչներին) լիազոր-ներկայացուցիչների միջոցով։ Դեսպանները և լիազոր ներկայացուցիչները դիվանագիտական բանակցություններ են վարում միջազգային կարևորագույն հարցերի վերաբերյալ։ Բայց ժամանակակից պետությունների միջև յեղած հարաբերությունների ասպարեզում մշտապես ծագում են և լուծում են պահանջում բազմաթիվ մասնավոր հարցեր, վեճեր, կոնֆլիկտներ։ Այդ ընթացիկ գործերը վարելու համար, դեսպանին կամ լիազոր-ներկայացուցչին օգնելու նպատակով սովորաբար նշանակվում են մի քանի հյուպատոսներ։ Հյուպատոսություններ (հյուպատոսների վարչություններ) հիմնվում են վոչ միայն այն պետության մայրաքաղաքում, վորտեղ նշանակվում են հյուպատոսները, այլև նրա խոշորագույն առևտրա-արդյու-

նաբերական կենտրոններում ու կարևորագույն նավահանգստային քաղաքներում: Հյուպատոսները գլխավորապես տնօրինում են պետությունների միջև յեղած առևտրական հարաբերություններին վերաբերող հարցերը: Նրանց է հանձնարարվում նաև այն յերկրում ապրող իրենց հայրենակիցների մասնավոր շահերի պաշտպանությունը, վորտեղ նշանակված են հյուպատոսները: Հյուպատոսներն այն յերկրի քաղաքացիներին, վորտեղ նրանք աշխատում են, վիզա (թույլտվություն) են տալիս մուտք գործելու այն յերկիրը, վորը նրանք ներկայացնում են:

Պետք է սակայն նշել, վոր բուրժուական, մանավանդ ֆաշիստական պետությունների հյուպատոսություններն ու նրանց աշխատակիցները հաճախ «համատեղության կարգով» զբաղվում են լրտեսությամբ, տեռորիստական ակտեր ու դիվերսիոն յելույթներ կազմակերպելով այն յերկրի կառավարության և ժողովրդի դեմ, վորտեղ նրանք աշխատում են: Այդ հատկապես վերաբերում է ԽՍՀՄ-ում յեղած մի քանի տարբերկրյա հյուպատոսների գործունեությանը, վորի մասին ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի առաջին նստաշրջանում



արտասանած իր ճառի մեջ մատնանշեց ընկ. Ժդանովը: Այդ կապակցությամբ ընկ. Ժդանովը պահանջեց հյուպատոսային ներկայացուցչությունների հավասարություն— այսինքն, վորպեսզի ԽՍՀՄ-ում յեղած տարբերկրյա հյուպատոսների թիվը կրճատվի և համապատասխանեցվի հյուպատոսների այն թվին, վոր ԽՍՀՄ-ն ունի մյուս յերկրներում: Կարելի յե նաև վորպես որինակ մատնանշել տարբերկրյա հյուպատոսությունների գործունեությունը Մադրիդում և հանրապետական Իսպանիայի մյուս քաղաքներում: Ինչպես հայտնի յե, այդ հյուպատոսություններից մի քանիսը դարձել են գեներալ Ֆրանկոյի մոտ ծառայության մեջ գտնվող լրտեսների, տեռորիստների ու դիվերսանտների իսկական շտաբներ:

նաբերական կենտրոններում ու կարևորագույն նավահանգստային քաղաքներում: Հյուպատոսները գլխավորապես տնօրինում են պետությունների միջև յեղած առևտրական հարաբերությունների վերաբերող հարցերը: Նրանց ե հանձնարարվում նաև այն յերկրում ապրող իրենց հայրենակիցների մասնավոր շահերի պաշտպանությունը, վորտեղ նշանակված են հյուպատոսները: Հյուպատոսներն այն յերկրի քաղաքացիներին, վորտեղ նրանք աշխատում են, վիզա (թույլտվություն) են տալիս մուտք գործելու այն յերկիրը, վորը նրանք ներկայացնում են:

Պետք ե սակայն նշել, վոր բուրժուական, մանավանդ ֆաշիստական պետությունների հյուպատոսություններն ու նրանց աշխատակիցները հաճախ «համատեղության կարգով» զբաղվում են լրտեսությամբ, տեռորիստական ակտեր ու դիվերսիոն յելույթներ կազմակերպելով այն յերկրի կառավարության և ժողովրդի դեմ, վորտեղ նրանք աշխատում են: Այդ հատկապես վերաբերում ե ԽՍՀՄ-ում յեղած մի քանի ոտարերկրյա հյուպատոսների գործունեությանը, վորի մասին ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի առաջին նստաշրջանում



արտասանած իր ճառի մեջ մատնանշեց ընկ. Ժդանովը: Այդ կապակցությամբ ընկ. Ժդանովը պահանջեց հյուպատոսային ներկայացուցչությունների հավասարություն— այսինքն, վորպեսզի ԽՍՀՄ-ում յեղած ոտարերկրյա հյուպատոսների թիվը կրճատվի և համապատասխանեցվի հյուպատոսների այն թվին, վոր ԽՍՀՄ-ն ունի մյուս յերկրներում: Կարելի յե նաև վորպես որինակ մատնանշել ոտարերկրյա հյուպատոսությունների գործունեությունը Մադրիդում և հանրապետական Իսպանիայի մյուս քաղաքներում: Ինչպես հայտնի յե, այդ հյուպատոսություններից մի քանիսը դարձել են գեներալ Ֆրանկոյի ծառայության մեջ գտնվող լրտեսների, տեռորիստների ու դիվերսանտների իսկական շտաբներ:

# ՈՒՂՂՈՒՄ

*«ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ»-ի № 4-ի 14-րդ էջի վերջից սկսվող և 15-րդ էջի սկզբից շարունակվող քաղվածքը պետք է կարդալ այսպես՝*

«Նիժնիյում,—գրում էր Լենինը 1918 թվի օգոստոսի 9-ին տեղական խորհրդային կազմակերպությունների ղեկավարներին—ակներև է, որ սպիտակ գվարդիական ապստամբություն է պատրաստվում: Հարկավոր է լարել բոլոր ուժերը, կազմել դիկտատորների յեռյակ··· անմիջապես մտցնել մասսայական տեռոր, ԳՆԴԱԿԱՀԱՐԵԼ ՑԵՎ ԴՈՒՐՍ ՔՇԵԼ հարյուրավոր պոռնիկներին, վորոնք հարբեցնում են զինվորներին, նախկին սպաներին և այլոց: Վոչ մի րոպե չհապաղել··· Հարկավոր է գործել ամբողջ թափով, կատարել մասսայական խուզարկություններ: Գնդակահարություններ զենք պահելու համար: Մենշևիկների և անհուսալիների մասսայական արտաքսում: Պահեստների պահակները փոխել, դնել հուսալիներին»:

*Նույն № 4-ի 73-րդ էջի վերևի 7-րդ տողի սկզբից պետք է լինի՝*

Ցարիցինում ընկ. Վորոշիլովը դարձավ ընկեր ՍՏԱԼԻՆԻ առաջին ու ամենամերձավոր···

*(Իսկ շարունակությունն ինչպես տեքստումն է):*



ՀԿ(բ) Կ ԿԿ հրատարակչություն—«Խորհրդ. Հայաստան»

# ԲԱՑՎԱԾ Է 1938 Թ.

բաժանորդագրությունը

# „ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ"

Լույս է տեսնում ամիսը 2 անգամ
Հ Կ (բ) Կ Կենտկոմի կուլտպրոպագանդայի
և ագիտացիայի բաժնի հրատարակությամբ

ԲԱԺԱՆԵԳԻՆԸ՝

12 ամիսը . . 6 ռուբ.
6 » . 3 »
3 » . 1 ռ. 50 կ.

Առանձին համարը՝ 25 կոպ.

Բաժանորդագրվելու համար դիմել՝
«Սոյուզպեչատ»-ի քաղաքային, շրջանային
բյուրոներին և փոստի բաժանմունքներին։